Ասոնց մէջ կը գտնուի Վենիզելոսի սանը, Փիսթոլաքիս, որ ուրիշ բանտարկեալներու կարգին կ'ամբաստանուի թէ ըմբոստութենէն քանի մը օր առաջ Կրետէէն Աթէնք անցած եւ բանակին ու նաւատորմին բազմաթիւ սպաներուն հաղորդած է Վենիզելոսի վերջին հրահանգները։ Ամբաստանեալը տրամադրելի կարեւոր գումարներ ունէր այս նպատակին համար։ Իր ստացուածքները գրաւուեցան մարտ 12ին։

Կրետէի ապստամբներն ալ Աթէնքի մէջ պիտի դատուին։ Հարցաքննութիւնները եւ դատավարութիւնները կը փութացուին, որպէսզի ժամանակին վերջանան եւ կարելի ըլլայ վերցնել պաշարման վիճակը, երեսփոխանական նոր ընտրութեանց համար։

*** Նախկին վարչապետ Գ. Միխալաքոփուլոս մերժեց անդամակցիլ 25 հոգինոց յանձնախումբի մը, որ պաշտօն ունի վերաքննելու սահմանադրութիւնը։

*** Գ. Ցալտարիս արձակուրդ ստացած ըլլալով, վարչապետութիւնը առժամապէս կը վարէ պատերազմական նախարարը, Զօր. Քոնտիլիս։

## Բացառիկ միջոցներ Ալժերիոյ մէջ

Կառավարութիւնը միշտ ուշադրութեամբ կը հետեւի Ալժերիոյ կացութեան, նկատի առնելով թէ համիսլամական եւ թէ յեղափոխական խլրտումները։ Կը յիշուի թէ վերջերս այդ գաղթավայրը գնաց ներքին նախարարը, եւ այս առթիւ ուշագրաւ վիճաբանութիւններ տեղի ունեցան խորհրդարանին մէջ։

Երէկ պաշտօնաթերթը հրատարակեց ներքին նախարարին մէկ հրամանագիրը, հետեւեալ բովանդակութեամբ.— Ով որ Ալժերիոյ բնիկները, ֆրանսական գաղթավայրերու եւ հովանաւորեալ երկիրներու բնիկները կամ օտարականները որ եւ է տեղ եւ որ եւ է միջոցով կը դրդէ անկարգութիւններ կամ ցոյցեր կատարել ֆրանսական վեհապետութեան դէմ, գործօն կամ կրաւորական դիմադրութիւն փորձել պետական օրէնքներու, հրամանագիրներու, կանոնագիրներու կամ հրամաններու դէմ, պիտի դատապարտուի 3 ամիսէն երկու տարի բանտարկութեան եւ 500–5000 ֆրանք տուգանքի։ Եթէ յանցաւորը պաշտօնատար է, պատիժները կրնան կրկնապատկուիլ։ Ասկէ զատ ենթական կրնայ 5 — 10 տարի զրկուիլ պետական պաշտօնէ։

## Շէյխերու պատգամաւորութիւն մը Պաղտատ կ'երթայ 86 կառքերով

Պաղտատէն կը հեռագրեն ապրիլ 4 թուականով.— Նոր դահլիճին կազմութենէն քանի մը օր վերջը խաղաղութիւնը վերեւ հաստատուեցաւ միջին Եփրատի շրջանին մէջ, որովհետեւ երկու ըմբոստ ցեղապետները, շէյխ Ապտիւլ Վահիտ Շուքար եւ Շէյխ Շալան Աթիյա յայտարարեցին թէ գոհ են որ իրենց ցաւերը պիտի դարմանուին նոր դահլիճին կողմէ։ Երկու ցեղապետները Պաղտատ եկան անցեալ շաբթու, իրենց հպատակութիւնը յայտնելու համար։ Իրենց հետեւորդները կը բաղկանային սպառազէն բազմութենէ մը որ տեղաւորուած էր 86 կառքերու մէջ։ Թափօրը անցաւ քաղաքին փողոցներէն։ Երկու ցեղապետները տեսակցեցան վարչապետին եւ ներքին նախարարին հետ եւ ընդունուեցան թագաւորէն, որուն յայտնեցին իրենց հաւատարմութիւնը, վարչական բարենորոգումներ խնդրելով։ Բայց կացութիւնը կնճռոտեցաւ, երբ հիւսիսէն ալ Պաղտատ հասան 60 ցեղապետներ, իբրեւ ներկայացուցիչները Իրաքեան Քիւրտիստանի։ Երեւի կ'ուզէին հակազդել Եփրատի ցեղախումբերու ցոյցին, քանի որ, համաձայն պաշտօնական զեկոյցին, իրենց միակ նպատակն էր զօրակցիլ կառավարութեան եւ ապահովել «Իրաքի բոլոր ցեղերուն եւ կրօնքներուն միութիւնը»։ Ասոնք ալ ընդունուեցան երիտասարդ թագաւորին կողմէ։

—·—

ՀԱՅԿԱՏՈՒՆՆԵՐՈՒ ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ընդհ. ժողովը, որ կը ներկայացնէ **1153** սէնտիքաներ կամ խմբակցութիւններ, նամակ մը ուղղելով վարչապետին, խնդրեց վերջնապէս ջնջել երեսփ. ժողովին նայաձեռնութեան իրաւունքը՝ ծախսերու քուէարկութեան համար։















# Justin de Marseille

**RÉALISÉ PAR MAURICE TOURNEUR**
**D'APRÈS UN SCÉNARIO ORIGINAL DE CARLO RIM**



















## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Տիկին Տիգրանուհի Յովհաննէսեան (ծնեալ Պօտուքեան, Պոլիս), ծնողքը Երզնկացի, կը փնտռէ իր եղբայրը Գէորգ Յովհաննէսեան, հօր անունը՝ Յովհաննէս, մօր անունը՝ Գայեանէ, Պալքանեան պատերազմին Գէորգ մեկնած է Պուլկարիա։ Իմացնել՝ Mme. Dikranouhi Bodoukian, 16, Rue Victor Hugo, Gentilly, Seine, France.

— Մարիամ Թաւէքսեան կը փնտռէ իր մօրեղբայրը՝ Հաճընցի Մինաս Մամասեան որ 1914 — 1931 կը բնակէր Փարիզի 11րդ թաղամասին մէջ։ Կը փնտռուի նաեւ Մինաս Թօսունեան։ Իրենց հասցէն իմացնել «Յառաջ»ի խմբագրութեան։

— Զէնկիլէրցի Տիկին Սաթենիկ Ճիլէրճեան կը փնտռէ իր որդին Ստեփան Ճիլէրճեանը 32 տարեկան, հօր անունը՝ Նազարէթ (Զէնկիլէրցի), քրոջ անունը՝ Վարդուհի, 1932ին մինչեւ յուլիս ամիս կը գտնուէր Մարսէյլ, 10, Rue Audier le Canet. Կը խնդրուի իր հասցէն գիտցողներէն իմացնել Տիկին Ս. Ճիլէրճեանի, 33, Rue de Choisy, Alfortville (Seine)։


Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme, PARIS (13)

կի յոբելեան տարին փակելու համար: Այդ առթիւ հարիւրաւոր կառախումբեր պիտի երթեւեկեն ոչ միայն Ֆրանսայէն, այլ եւ Անգլիայէն, Պելժիայէն, Զուիցերիայէն, Իտալիայէն եւ Սպանիայէն:

ՇԱՐԺԱՆԿԱՐԻ ԱՍՏՂԵՐԷՆ Պէթի Համիլթըն ինքզինք վար նետեց Նիւ Եորքի մէջ, խոշոր շէնքի մը 11րդ յարկէն, սիրային վշտի մը պատճառով: Քսանըմէկ տարեկան էր: Սիրահարած էր ուրիշ աստղի մը, Ֆրէտ Լէվիի եւ գաղտնապէս նշանուած, սակայն ծնողքը մերժեցին: Երեքշաբթի օր աղջիկը թոյն խմած ըլլալով, անկողնին վրայ կը հոնդար: Բարեկամները օգնութեան հասան եւ փրկեցին: Այնուհետեւ վտանգը անցած կը համարուէր, բայց հինգշաբթի առտու սպասուհիէն խուսափելով ինքզինք վար նետեց պատուհանէն: Զարդ ու փշուր եղած էր, բայց կրցաւ շշնչել, վերջին շունչը փչելէ առաջ.— «Չկա՞յ մէկը որ սիրտ ունենայ սպաննելու զիս»:

150.000 *ՈՒՍԱՆՈՂՆԵՐ մէկ ժամ դասերը դադրեցնելով, ցոյց մը կատարեցին Նիւ Եորքի մէջ, պատերազմի դէմ:*

*ՅԱՆԴՈՒՆԳՆ ԳՈՂԵՐ գիշերանց պահուելով Նիսի դատական պալատի մէկ ձեղնայարկին մէջ, յաջողեցան ծակել դրամարկղը եւ թռցնել պարունակութիւնը: Կորսուած գումարը քանի մը միլիոն կը հաշուեն:*

*ՍՏՈՐԵՐԿՐԵԱՅ ՇՏԵՄԱՐԱՆՆԵՐ կը շինուին Անգլիոյ մէջ, զէնք եւ ռազմանիւթ պահելու համար, իբրեւ զգուշութիւն օդանաւային յարձակումներու դէմ:*

*ԻՆՔՆՈՒԹԵԱՆ ԹՈՒՂԹԵՐՈՒ նորոգման համար, մինչեւ Լ. վերջացած ըլլալով, յաջորդ շարքին ծանուցման կը սպասուի այս շաբթու:*

*ԵԱՖԱՅԻ ԼԵՒՈՆ ԵՆՈՎՔԵԱՆ, որուն ձերբակալութիւնը ծանուցած էինք երէկ, հարցաքննիչ դատաւորին առջեւ խոստովանեցաւ իր բոլոր մեղքերը (կեղծ չէքեր քշել): «Գործը շատ լաւ կ'երթար, ըսաւ, եւ կը խորհէինք շարունակել Մարսէյլի եւ Պարսելոնայի մէջ: Եթէ յաջողէինք, աւելի քան մէկ ու կէս միլիոն ֆրանք զանձած պիտի ըլլայինք»: Իսկ երկու հրեայ քոյրերը կը մերժեն որ եւ է պատասխանատուութիւն, ամէն մեղք ձգելով Լեւոնի վրայ: Քննութիւնները կը շարունակուին:*

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

*Փարիզի «ԵԳԻՊՏԱՑԻ» կոմիտէն ընդհ. դասախօսական ժողովի կը հրաւիրէ իր շրջանի բոլոր ընկերները վաղը Երկուշաբթի երեկոյ ժամը* 8.30*ին*, Au Clair de Lune *սրճարանի վերնայարկը: Մէթրօ՝ Փլաս տ'Իթալի:*

կը հրաւիրուին նաեւ շրջանի ընկերները:

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*կազմակերպուած ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ ՋԱԽԱՐԵԱՆ Ակումբին կողմէ*
*Ի նպաստ իր ԱԿՈՒՄԲ - ԳՐԱԴԱՐԱՆԻՆ*
*14* Ապրիլ կէս օրէ վերջ ժամը 3էն մինչեւ կէս գիշեր
2, Rue Alexandre Guilmant, Meudon (Մէօտօնի կայարանին դիմացը)
ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ ***ՄԱՍՈՒՆԻ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԸ***
*(4 արար եւ 1 պատկեր)*
կը նուագէ «*ՏՓՐՆոաւ Ե*» *Սխզաումբը:*
ձոխ պիւֆէ: Մուտք 5 ֆր.:

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած *ՍԷՎՐԱՆԻ ՀԱՅ ԿՐԹԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*
Այսօր կիրակի կէս օրէ վերջ ժամը 3ին, իր սեփական սրահին մէջ
կը բանախօսէ՝ *ՀԱՅՐ ՍԱՀԱԿ ՎՐԴ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆ*
երգ, արտասանութիւն եւ անակնկալներ Հայ Արիներու կողմէ
*կը ներկայացուի՝ ՎԵՐԱԴԱՐՁԸ (ողբերգութիւն)*
եւ Երուանդ Օտեանի «*ՋԱՎԱԼԼԸ*»ն (*զաւեշտ*)
Շոգեկառք՝ կար տիւ Նորէն 13.50, 14.35 եւ 14.45ին:
Ծան.— *Մօտ օրէն մեծ պատրաստութեամբ կը տօնուի Հայ Մշակոյթի* Օրը:

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

**ՏԱՐՕՆ-ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ** ՀԱՅՐԵՆԱԿՑ. ՄԻՈՒԹԵԱՆ ՖՐԱՆՍԱՅԻ ՇՐՋԱՆԻ
ԿԵԴՐՈՆԱԿԱՆ ՎԱՐՉՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ
27 Ապրիլ Շաբաթ երեկոյ ժամը 9էն մինչեւ առաւօտ
Պէլվիլուազի, Jean-Jaurès մեծ սրահին մէջ,
23, Rue Boyer, մէթրօ՝ Մէնիլմօնթան:
Բանախօսութիւն, երգ, նուագ, արտասանութիւն եւյլն.:
Պատրաստուեցէ՛ք տեսնելու հայկ. պարերը ՏԱՐՕՆի տարազով:

Խմբագրատուն կը հրաւիրուի Պ. Նուպար Մ. Պէպպապեան:
Նոյնպէս՝ ընկեր Հ. Ակոնայեան:




**Le Gérant: H. STEPHAN**
**Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Damesme, PARIS (13)**

Զորեքշաբթի օր Լարիսայի մէջ պիտի դատուին 60 երեսփոխաններ, ծերակուտականներ եւ լրագրողներ:

⁂ Աթէնքի զինուորական ատեանը քանական տարի բանտարկութեան դատապարտեց Վենիզէլոսի սանը՝ Փիւթոլաքիս, եւ տեղակալ Քանարիսը: Տասնըմէկ ապստամբներ դատապարտուեցան 2էն 20 տարի բանտարկութեան, իսկ հոգի անպարտ արձակուեցան: Զինուորական վարժարանին մէջ աշակերտներ եղան տասը սպաներ:

Պատերազմական նախարար եւ փոխ-վարչապետ Զօր. Քոնտիլիս յայտարարեց թէ պաշարման վիճակը պիտի վերնայ ապստամբներու դատավարութենէն անմիջապէս վերջը: Մինչ այս մինչ այն, Վենիզէլոսեան թերթերու հրատարակութիւնը պիտի արտօնուի, պայմանաւ որ գրաքննութեան ենթարկուին:

⁂ Զօր. Վլախոս, որ բացակայութեան դատապարտուած էր եւ թաքստոց մտած, յաջողեցաւ իտալական կղզի մը հասնիլ առագաստանաւով:

## ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԵՐԵՔ ՀՈԳԻ ՄԵՌԱՆ* եւ տասը հոգի վիրաւորուեցան, երբ Պիրէնեանց ճեպընթացը ժամը 100 քիլոմեթր արագութեամբ սուրալով, գիծէն դուրս ելաւ Մարշփրիմի մէջ, (Պոռտոյի մօտ): Քանի մը վակոններ ջախջախուեցան:

*ԳԵՐՄԱՆԻՈՅ ԱՌԱՋՆՈՐԴԸ ԵՒ ՎԱՐՉԱՊԵՏԸ* հրամանագրով մը ջնջեց հանրապետութեան նախագահի դրօշը եւ անոր տեղ հաստատեց նոր մը, որ միայն իրեն յատուկ է: Նոր դրօշը կարմիր քառակուսի մըն է, շրջագծուած՝ սեւ, ճերմակ եւ սեւ: Ճերմակ շրջանակի մը մէջտեղը կը ներկայացնէ կեռ սեւ խաչ մը, շրջապատուած կաղնի ոսկեզօծ տերեւներով: Չորս անկիւններուն վրայ կը գտնուին չորս տարբեր արծիւներ, երկուքը՝ կեռ խաչի վրայ, միւս երկուքը՝ բանակին արծիւները, բոլորն ալ ոսկեզօծ:

*ՌՈՒՄԱՆԻՈՅ* Փաշքանի քաղաքին ամբողջ մէկ թաղը հրոյ ճարակ եղաւ, ահ ու սարսափի մատնելով ժողովուրդը: Մոխիր դարձան 60 տուներ եւ խանութներ: Շրջակայ քաղաքներէն հրշէջներ հասան գիշերանց, բայց հրդեհը տեւեց մինչեւ առտու:

*ԿԱՐԵՒՈՐ ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ* մը տեղի ունեցաւ Ժընեւի մէջ, նախաձեռնութեամբ Պ. Թիթուլէսքուի, որ ճաշի հրաւիրած էր Թուրքիոյ եւ Խ. Միութեան արտաքին գործավարները, Եուկոսլավիոյ, Չեխոսլովաքիոյ ներկայացուցիչները եւն.: Խօսակցութեան գլխաւոր նիւթն էր Ֆրանսական յուշագիրը, Գերմանիոյ վերազինման մասին:

*ԳԵՐՄԱՆԱԿԱՆ ՄԱՄՈՒԼԸ* բուռն յարձակումներ կ'ուղղէ Ֆրանսայի դէմ, Սթրէզայի խորհրդակցութեանց առթիւ, վերազինման ամբողջ պատասխանատուութիւնը վերագրելով անոր եւ մերժելով Գերմանիոյ դէմ եղած մեղադրանքները:

1600 *ՆԱԽԿԻՆ ՌԱԶՄԻԿՆԵՐ* Փարիզէն ճամբայ ելան դէպի Հռոմ, իբրեւ հիւր իրենց իտալացի դասակիցներուն:

*ՀՐԵՂԷՆ ԽԱՉԻ* 20.000 անդամներ, որոնք համախմբուած էին 14 նահանգներէ, թափոր մը կազմեցին Ռէնսի մէջ:

*ԲԱՄՊԱԿԻ* մեծաքանակ գնումներ կը կատարուին Անգլիոյ մէջ, Գերմանիոյ կողմէ: 1935ի առաջին երկու ամիսներու ընթացքին գնուած է 522.500 անգլ. ոսկիի բամպակ, ինչ որ ուշագրաւ է, համեմատելով անցեալ տարուան հետ:

1877 *ՄԱՐՏ* 1ին նամականուն ձգուած տոմս մը իր հասցէին հասաւ ... շաբաթ օր: Տէրը մեռած էր եւ աղջիկը ստացաւ տոմսը, որ Վիքթորիա թագուհիին պատկերը կը կրէ:

«*ՄԱՀՈՒԱՆ ՃԱՌԱԳԱՅԹ*»ի մը փորձերը կը կատարուին Պուժի մէջ, համաձայն «Մաթէն»ի տեղեկութեանց:

---

**Յ.**

### Փարիզ եւ շրջակաները

Հ. Դ.

*ՓՐՈՓԱԿԱՆՏԻ* Յանձնախումբի նիստը տեղի պիտի ունենայ այս Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 32, Ave. des Goblinsի սրճարանի վերնայարկը:

Կը խօսի՝ ընկ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ. Նիւթ՝ «Հայ քաղաքական կազմակերպութիւնները մինչեւ Հ. Յ. Դաշնակցութիւն»:

### Գալա

*ՌՕՄԱՆԻ* Անդրանիկ խումբի ընկերական ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ ապրիլ 18ին, Հինգշաբթի երեկոյ, ժամը 8.45ին, ընկեր Զիլինկիրեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ: Ընկերներէն կը խնդրուի անդամատետրերը միասին բերել:

---

### ՍԻՓԱՆի Երեկոյթ - Պարահանդէսը

Տեղի կ'ունենայ 28 Ապրիլ կիրակի ժամը 3էն մինչեւ կէս գիշեր

VICTOR HUGOի շքեղ սրահներուն մէջ

46, Rue St. Didier. Métro: Victor Hugo

---

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ ՓԱՐԻԶԻ ՍԷՕԼԷՕԶԻ ՀԱՅՐ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ

*Միութեանս «Արեւիկ» Թատերախումբը կը ներկայացնէ*

Պ. Դուրեանի «*ՍԵՒ ՀՈՂԵՐ*»ը (*դրամ 4 արար*)

եւ «*ԵՐԿՈՒ ԱՆՎԱՐՏԻՆԵՐ*»ը (*զաւեշտ*)

28 Ապրիլ կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Սէվրի Պէշիկթաշլեան սրահին մէջ

26, Rue Troyon - Sèvres, Métro Pont de Sèvres

Տոմսերու գիները.— **10, 7, եւ 5** փրանք

Ծանօթ.— *Կը խնդրուի կուսակցութիւններէ եւ ազգային կազմակերպութիւններէ նկատի ունենալ այդ թուականը:*

---

*ԿՐԱՆ ԼԷ ՓԷՆԻ (ՄԱՐՍԷՅԼ) ՀՈԳԱԲԱՐՁՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ ԱՊՐԻԼ ՏԱՄՆԸՄԷԿԸ, ԱՊՐԻԼ 28ԻՆ*

#### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Հ. Յ. Դ. Լիոնի Զաւարեան Դպրոցի վարչութիւնը իր շնորհակալութիւնը կը յայտնէ ընկերուհի Ս. Յակոբեանի որ իր Լիոն այցելութեան առթիւ Դպրոցին նուիրած է 9 հատոր գիրք:*

*ՏՕՔԹ. ՀԱՅԿԱԶՈՒՆ Վարվարեանէ կը խնդրուի իր հասցէն իմացնել՝* Golipsi Arslandjianի, 5, Rue Maria Louiza, Varna, Bulgarie.



#### ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*ՍԷՆԹ ՄԱՐԿՐԻՏԻ «Համազգայ» խումբի ընկերները իրենց խորին ցաւակցութիւնը կը յայտնեն, ընկերներ՝ Յովհ. եւ Գրիգոր Գասպարեաններին իրենց փոքրիկին եւ եղբօրորդւոյն Շնորհիկի զաւակէն մահուան առթիւ:*

#### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ

Մարսէյլի Բալուի Հայր. Միութեան կողմէ

**20,** Ապրիլ Շաբաթ երեկոյ ժամը **8.30ին**






Հայրենակիցնե՛ր, օգտուեցէք մեր նոր սակագիններէն, եթէ կ'ուզէք հաճելի դարձնել ձեր կազմակերպած հանդէսները, դիմեցէք *ԵՓՐԱՏ* նուագախումբին, որ իր գիները զեղչած է *100 - 150* ֆրանք, բաղդատմամբ ուրիշ նուագախումբերու: *ԵՓՐԱՏ* նուագախումբը կը ստեղծէ անզուգական եւ հաճելի մթնոլորտ: կը նուագէ *Հայկական, Եւրոպական* եւ *Կովկասեան* ու *Արեւելեան* ամէն տեսակ եղանակներ եւ ԹԱՆԿՕ ԱՐԺԱՆԹԻՆ նոր ռէփէրթուարով: դիմել՝ 8 օր առաջ՝

Պ. ONOSSIANի, 15, Rue Pourtour, Clamart. (Seine).

Խումբին արձանագրուիլ փափաքող երաժշտագէտները դիմեն վերոյիշեալ հասցէին:




**Le Gérant: H. STEPHAN**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

**17, Rue Damesme, PARIS (13)**

## Յ.

### Փարիզ եւ շրջակաները

Հ. Յ. Դ.

**ՓՐՈՓԱԿԱՆՏԻ** Ցանձնախումբի նիստը տեղի պիտի ունենայ վաղը Հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին, 32, Ave. des Goblinsի սըրճարանի վերնայարկը:

Կը խօսի՝ ընկ. ՍԱՀԱԿ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ. Նիւթ՝ «Հայ քաղաքական կազմակերպութիւնները մինչեւ Հ. Յ. Դաշնակցութիւն»:

**ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ** «Զաւարեան» կոմիտէի ժողովը վաղը Հինգշաբթի երեկոյ, ժամը 8.30ին, Ակումբին մէջ: Կը խօսի ընկ. ԱՐՇԱԿ ՃԱՄԱԼԵԱՆ:

### Գաւառ

**ԹՈՄԱՆԻ** Անդրանիկ խումբի ընկերական ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ ապրիլ 18ին, Հինգշաբթի երեկոյ, ժամը 8.45ին, ընկեր Զիլինկիրեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ: Ընկերներէն կը խնդրուի անդամատետրերը միասին բերել:

**ԼԻՈՆԻ** Վարանդեան Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին «Զարդարեան» Գրադարանը:

---

# ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՀԱՆԴԷՍԻՆ ՔՍԱՆԱՄԵԱԿԸ Զ. Ո. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ, ԱՅՍ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 8.30ին

**Salle GAVEAU**ի ՄԷՋ **45, Rue La Boëtie**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԳԼԽԱՊԵՏ ՌՈՒԲԷՆ ԹԱԴԷՈՍԵԱՆ (հայ բանակի սպաներէն)

ԿԸ ԽՕՍԻՆ ՀԱՅՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ-ՄՈՎՍԷՍԵԱՆ, ՍԵԴՐԱԿ ՍԱՍՈՒՆԻ ԵՒ ՀՐԱՆՏ ԱԿՈՆԱՑԵԱՆ

Գեղարուեստական բաժին՝

ՏԻԿԻՆ ԱՐՇԱԼՈՅՍ ՍԱՐԳԻՍԵԱՆ՝ արտասանութիւն: Ընկ. ԵՐՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆ՝ արտասանութիւն: ՕՐ. ՆԷԼԼԻ ԿՕԹԻԷ՝ թաւջութակ, Ա. մրցանակաւոր Փարիզի պետական երաժշտանոցէն: Փ. ՊԱԺԷՕ, haubois (թաւրինգ), Օփերայէն: Ժ. ԺԻԼ՝ երգեհոն (orgue) Ա. մրցանակաւոր Փարիզի պետական երաժշտանոցէն: Ժ. ՄԱՐԻԿԵԱՆ՝ երգ:

Նուագախումբ մը, բաղկացած Փարիզի պետական երաժշտանոցի Ա. մրցանակաւորներէն, կը նուագէ մահերգներ եւ հայ հոգեւոր երգեր:

Սրահին դռները կը բացուին ժամը ճիշդ 8.30ին: Ծախսերու մասնակցութեան համար 5 եւ 3 ֆրանք:

---



Médaille d'Or 1930

# "ՇԻՐԱԿ„ ՄԵԾ ՆՊԱՐԱՎԱՃԱՌԱՏՈՒՆ

**26, Rue TRÉVISE, Paris (9)** ՄԵԹՐՕ **Cadet.** ՀԵՌ. **Prov.: 38-63**

Ինչպէս ամէն տարի այս տարի եւս ունինք ԶԱՏԿԱԿԱՆ ՀԱՄՈՎ ՀՈՏՈՎ ՉԷՕՐԷԿՆԵՐ

Միակ կեդրոնատեղին եւ ամենամեծ մթերանոցը Արեւելեան եւ արեւմտեան ընտիր նպարեղէններու:

Ստացած ենք պարսկական ՍԱՏՐԻ բրինձը: **Livraison à domicile**

---

# ❁ Բացուած է Ա. ՓԱՆՈՍԵԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՄԵԾ ՆՊԱՐԱՎԱՃԱՌԱՏՈՒՆԸ ❁

Téléphone TRUDAINE 19-41 **22, RUE BAUDIN-PARIS** (50 մէթր square Montholonէն դէպի rue Maubeuge) Métro: CADET et POISSONNIÈRE

Արեւելեան ամէն տեսակ նպարեղէններ, ըմպելիներ եւ անուշեղէններ: Ասիական անարատ թարմ սուրճ: Միայն մէկ այցելութիւն կը բաւէ գաղափար կազմել ապրանքների թարմութեան եւ գների անմրցելիութեան մասին:

**Livraison à Domicile**

---

## Նոր ճգնաժամ Թուրքիոյ մէջ ?

Իրազեկ թղթակիցներ կը հաւաստեն թէ Մինիսի համագումարին մէջ, որ վերջացաւ քանի մը օր առաջ, հիթլէրական վարիչները քններ են հետեւեալ խնդիրը. — Հանրաքուէ մը սարքել երկու երեք ամիսէն, ժողովուրդին կարծիքը իմանալու համար պարտաւորիչ զինուորութեան եւ Ազգերու Դաշնակցութեան վերադառնալու հարցերու մասին: Ժողովին մասնակցեր է նաեւ Տոքթ. Կէօպէլս, փրոփականտի նախարարը:

### ՀԱՅԿԱԿԱՆ «ՔԻՒՊԻՔ»

Պոլսոյ «Սօն Փոսթա» լրագիրը կը գրէ այս խորագրին տակ. —

— Պոլսոյ ամէն կողմը հարիւրաւոր ափարթմաններ կը շինուին հայ եւ յոյն ճարտարապետներէ, որոնք իրենց ուրոյն քիւպիքը կուտան շէնքերուն, փոխանակ թրքականի: Եթէ ես քաղաքապետ ըլլամ, կ'ըսէ յօդուածագիր մը կ'արգիլեմ այս յոյն եւ հայ ճարտարապետները, որպէսզի քաղաքը փրկուի օտարութենէ:

## Նոր շարժը - M. N. O.

Ինքնութեան թուղթերու նորոգման համար, պէտք է փութան դիմում կատարել այն աշխատաւորները որոնց մականունները կը սկսին M. N. O. տառերով (ֆրանսերէն):

## Կիներու միջազգային համագումարը Պոլսոյ մէջ

Երկուշաբթի օր բացուեցաւ կիներու միջազգային համագումարը, Պոլիս, Եըլտըզի պալատին մէջ: Թերթերը կը գրեն թէ ժողովը տեղի կ'ունենայ այն դահլիճին մէջ ուր Սուլթան Համիտ կը պահէր իր հարէմը (կանանոց), 25 ազգերու պատկանող 200 կիներով: Համագումարին կը մասնակցին 38 ազգեր, աշխարհի բոլոր մասերէն: Այս պատմական դէպքին առթիւ, Թրքական կառավարութիւնը հրապարակ հանեց նամականիշ մը, որ կը ներկայացնէ գլուխը թրքուհիի մը, իբրեւ մայրը Աթաթիւրքի: Պատկերին տակ տպուած արձանագրութիւն մը կ'ըսէ թէ թրքուհիները, որոնք իրաւունքներու կատարեալ հաւասարութիւն կը վայելեն հիմա, իրենց ազատագրութիւնը կը պարտին Աթաթիւրքի (Մ. Քէմալ) մօրը տուած դասերուն:

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

**ԼՐՏԵՍՈՒԹԵԱՆ ԽՈՇՈՐ ՑԱՆՑ ՄԸ** երեւան հանուեցաւ Չեխոսլովաքիոյ մէջ: Անցեալ շաբթու նախկին սպայ մը ձերբակալուած էր Փրակայի մէջ: Քննութիւնը հաստատեց թէ ամբաստանեալը լրտեսութիւն կը կատարէր օտար պետութեան մը հաշւոյն: Ասոր վրայ ձերբակալուեցան 16 մեղսակիցներ: Սպան կապ ունէր նաեւ չորս չեխ սպաներու հետ, որոնք նմանապէս ձերբակալուեցան:

**ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐ** Փարիզ պիտի գան մայիսի կիսուն, կարգ մը դասախօսութիւններ կատարելու համար համալսարանին մէջ: Հրաւէրը ուղղուած է Փարիզէն:

**ԳԵՐՄԱՆԻԱ ՄԵՐԺԵՑ ՅԱՆՁՆԵԼ** լրագրող Եաքոպ Պէրթօլտը, որ առեւանգուած էր Զուիցերիայէն: Այս առթիւ յանձնուած ծանուցագիրը կ'ըսէ թէ քանի որ պաշտօնական անձեր չեն խառնուած Եաքոպի առեւանգութեան, կալանաւորը պիտի դատուի իբրեւ զինուորական գաղտնիքներ մատնող:

**ԱԹԷՆՔԻ ՆԱԽԱՐԱՐԻ 228 ԸՄԲՈՍՏՆԵՐԷՆ** 122ը զինուորական ատեանին առջեւ հանուեցան ապրիլ 15ին: Այս առթիւ որոշուեցաւ Վենիզէլոսի, Փլասթիրասի եւ միւս փախստականներու դատը անջատել ընդդիմադիր պետերու դատէն, որ պիտի սկսի հինգշաբթի օր:

---

**ՓԱՐԻԶԻ ԵԳԻՊՏԱՑԻ ԿՈՄԻՏԷՆ** իր ընկերներէն եւ համակիրներէն կը խնդրէ նկատի ունենալ հետեւեալ թուականը՝
28 ԱՊՐԻԼ, ԿԱՐՄԻՐ ԿԻՐԱԿԻՆ

---

### ԼԱՒ ՊԱՏԵՀՈՒԹԻՒՆ ՄԸ

#### ԱՇԽԱՏԱՆՈՑ ՓՆՏՌՈՂ ՀԱՅ ԼՈՒՍԱՆԿԱՐԻՉՆԵՐՈՒՆ

Տեղափոխման պատճառաւ, Արաքս լուսանկարչատունը իր աշխատանոցը կը թողու շատ յարմար գինով: Յարմար պատեհութիւն մը՝ ոչինչ գինով, Փարիզի ամէնէն կեդրոն թաղին մէջ հաստատուիլ ուզող Հայ լուսանկարիչներուն: Ելեկտրականութիւն, ջուր, կազ, թէլէֆօն: Երեք խոշոր բաժիններ: Աթըլիէն օրուան եւ ելեկտրական լոյսով: Տարեկան վարձք 3600, հազիւ պանդոկի սենեակի մը գինին չափ: Այցելել փափաքողները, ժամադրութեամբ անձամբ դիմեն Արաքսին, 9, Rue Papillon, Փարիզ, հեռաձայն Prov. 49-34.

---



---

ԸՆՏԱՆԵԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ
Մարսէյլի Բալուի Հայր. Միութեան կողմէ
20, Ապրիլ Շաբաթ երեկոյ ժամը 8.30ին

ՄԵՐ ՔՈՎ ՆԱՄԱԿ ՈՒՆԻ Գարեգին Փիլիպպոսեան, որ նախապէս կը բնակէր, 9, Rue Viscouti.


Le Gérant: H. STEPHAN
17, Rue Damesme, PARIS (13)
Imprimerie A. DER (AGOPIAN)

## Հ. Յ. Դ.

*ԼԻՈՆԻ Վարանդեան Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկեր-ները վաղը Ուրբաթ երեկոյ ժամը 8.30ին «Զարդարեան» Դրադարանը:*

### ԸՆԿԵՐ-ՀԱՄԱԿՐԱԿԱՆ ՀԱՒԱՔՈՅԹ ՁԱՏԿԻ ԱՌԹԻՒ

կազմակերպուած Վիէնի Քրիստափոր եւ Մուրատ խումբերու կողմէ

*Այս Շաբաթ իրիկուն, ժամը 8էն մինչեւ 12,*

*Հ. Յ. Դ.-ի Խաժակ Ակումբին մէջ*

Կը հրաւիրուին մեր բոլոր ընկերները եւ համակիրները

### ԱՑՑ ԱՆԾԱՆՕԹ ԶԻՆՈՒՈՐԻՆ

Ֆրանսայի ճակատի ճախկին կամաւորներու Միութեան վարչութիւնը կը խնդրէ իր բոլոր անդամներէն, որ յառաջիկայ երկուշաբթի 22 ապրիլ, առաւօտեան ժամը 9ին, անպայման ներկայ գտնուին Մէթրօ ժորժ Ե. ելքին մօտ, մասնակցելու համար Զ. Ո. Միութեան կազմակերպած յաղթական կամարի այցի երթին:

*Ֆրանսահայ Նախկին Կամաւորներու Միութեան Նախագահ*

*Հ. ՄԱՐՄԱՐԵԱՆ*

Զ. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղի վարչութիւնը կը խնդրէ իր ընկերներէն, համակիրներէն, ինչպէս նաեւ ազգային կազմակերպութիւններէն, մասնակցելու համար Անծանօթ Զինուորին այցի թափօրին, ներկայ գտնուիլ յառաջիկայ երկուշաբթի առաւօտեան ժամը 9ին, Մէթրօ ժորժ Ե. ելքին մօտ:

*Վարչութիւն Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ Փարիզի մասնաճիւղին*

Վիէնի Եռզկատի եւ շրջ. Հայր. Միութեան պարգեւաբաշխութիւնը յետաձգուած է Օգոստոսին:

## ԱՊՐԻԼԵԱՆ ՍԳԱՀԱՆԴԷՍԻՆ ՔՍԱՆԱՄԵԱԿԸ Զ. Ո. ՄԻՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ, ԱՅՍ ԵՐԿՈՒՇԱԲԹԻ ԵՐԵԿՈՅ ԺԱՄԸ 8.30ին

**Salle GAVEAU**ի ՄԷՋ **45, Rue La Boëtie**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ Պ. ՌՈՒԲԷՆ ԹԱԴԷՈՍԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ ՀԱՅՐ ՍԱՀԱԿ ՏԷՐ-ՄՈՎՍԷՍԵԱՆ, ՍԵԴՐԱԿ ՍԱՍՈՒՆԻ ԵՒ ՀՐԱՆՏ ԱԿՈՆԱՅԵԱՆ

Գեղարուեստական բաժին՝

*ՏԻԿԻՆ ԱՐՇԱԼՈՅՍ ՍԱՐԳԻՍԵԱՆ՝ արտասանութիւն: Ընկ. ԵՐՈՒԱՆԴ ԳՐԻԳՈՐԵԱՆ՝ արտասանութիւն: ՕՐ. ՆԵԼԼԻ ԿՕԹԻԷ՝ թաւջութակ, Ա. մրցանակաւոր Փարիզի պետական երաժշտանոցէն: Փ. ՊԱԺԷՕ, Hautbois (թաւսրինգ), Օփերայէն: Ժ. ԺԻԼ՝ երգեհոն (orgue) Ա. մրցանակաւոր Փարիզի պետական երաժշտանոցէն: Ժ. ՄԱՐԻԿԵԱՆ՝ երգ:*

Կը մասնակցի նաեւ Պ. ԱՐԱՅ ՊԱՐԹԵՒԵԱՆ

Նուագախումբ մը, բաղկացած Փարիզի պետական երաժշտանոցի Ա. մրցանակաւորներէն, կը նուագէ մահերգներ եւ հայ հոգեւոր երգեր:

Սրահին դռները կը բացուին ժամը ճիշդ 8.30ին: Ծախսերու մասնակցութեան համար 5 եւ 3 ֆրանք:

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Այս երկուշաբթի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Սալօն Մազընոյի շքեղ սրահին մէջ **88 - 90 Rue d'Aubagne**

ԿԸ ԽՕՍԻՆ Պ. **ՎԱՀԱՆ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ**. ՏԻԿ. **Ն. ՔԻՊՐԻԹՃԵԱՆ** ԵՒ **ՀԱՅԿ ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ**

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին՝ Պ. Պ. ՏԷՐ ՎԱՐԴԱՆԵԱՆ, ՊԱՐՍՈՒՄԵԱՆ, ԳԱԲՐԻԷԼԵԱՆ, ՔԷՆՏԷՐԵԱՆ, ԳԱՏԻՃԵԱՆ և Զ. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ ՎԱՀԱԳՆԵԱՆ նուագախումբը*

Կարգապահութեան կը հսկեն Հ. Մ. Ը. Մ.-ի սկաուտները



*Պ. Հայկ Նազգաշեան, Պ. Վարշամ Մարգարեան (Պոլիս), Օր. Ֆրանսուհի Մարգարեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Նազգաշեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Նազգաշեան (Տրամա), Տէր եւ Տիկին Գունտաքճեան (Պոլիս), Տիկին Ա. Եազմաճեան, Այրի Տիկին Բէհրիպարեան, Տէր եւ Տիկին Բէհրիպարեան եւ զաւակունք, Օր. Ա. Բէհրիպարեան, Տէր եւ Տիկին Հ. Պալեան, Տէր եւ Տիկին Կ. Պալեան, Տէր եւ Տիկին Գ. Եալընըզեան սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի կնոջ, քրոջ, քրոջաղջկան, եւ ազգականուհիին՝*

### ՏԻԿԻՆ ԷԼԻԶ ՆԱԳԳԱՇԵԱՆԻ

(Ծնեալ Մարգարեան)

*զառնակսկիծ մահը որ տեղի ունեցաւ Ապրիլ 16ին, 22 տարեկան հասակին:*

*Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ, վաղը Շաբաթ, 20 Ապրիլ կէսօրէ վերջ, ժամը 1.30ին, St. Germain - en - Layeի եկեղեցիին մէջ, ուրկէ հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Nouveau Cimitière.*

*ԾԱՆՕԹ.* — Շոգեկառք Սէն Լազարէն ժամը 12.51ին:

*Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այն նկատել:*

### ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

ՀԱՅ ԱՐԻՆԵՐՈՒ ՄԱՐՍԷՅԼԻ *ՄԵԾՆ ՏԻԳՐԱՆ* ԽՈՒՄԲԻ ԿՈՂՄԷ

ԼԻՈՆ, վաղը Շաբաթ երեկոյ ժամը 8.45ին, գ. թաղապետարանի սրահը

ՏԵՍԻՆ, այս կիրակի երեկոյ ժամը 8.45ին, Հ. Յ. Դ. ՏԱՆ մէջ:

Ս. ԷԹԻԷՆ, 22 Ապրիլ երկուշաբթի, կէս օրէ ետք ժամը ճիշդ 2.30ին սովորական սրահին մէջ:

*12 պատկերներ սկաուտական - ազգային - գեղարուեստական:*

կը ներկայացուի՝ *ԵՐԿՈՒ ՀՆԱԿԱՐԿԱՏՆԵՐԸ:*

մուտք՝ 4 եւ 3ֆրանք:



### ԾԱԽՈՒԻ Է

*ՄԵԿՆՈՒՄԻ պատճառով ծախու է խանութ մը Վալանսի մէջ: Կը գտնուի հայկական թաղին մօտ, ներկայիս իր յաճախորդները կը բաղկանան մասնաւորաբար Ֆրանսացիներէ, այնպէս որ գործառնութիւնը պիտի կրկնապատկուի անմիջապէս:*

*Տեղեկութեանց համար դիմել՝* Յառաջի վարչութեան:

### ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԿԸ ԾԱԽՈՒԻ

*ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ձեռքէ պիտի ելլէ խանութ մը Վալանսի մէջ, աւելի յարմար՝ հայ դերձակի մը կամ հայախօս դերձակի մը: Տեղեկութեանց համար դիմել Յառաջի:*




**Le Gérant: H. STEPHAN**

**17, Rue Damesme, PARIS (13)**

**Imprimerie A. DER (AGOPIAN)**

կին մէջ այս անուան մօտիկ մէկ տօնի կը հանդիպինք, որուն յաճախ կ'ակնարկուի Շահնամէի մէջ, պարսկական ամանորին՝ Նաւրուզի հետ: Այդ տօնին անունն է Սաղհակ կամ Շապ Սաղհակ, որ հրատօն մըն էր եւ կը հանդիպէր ձմեռը: Դժուար է ցոյց տալ որ եւ է կապ մեր Զատիկին հետ: Ոմանք ուզած են զայն մօտեցնել պարսկական զէտէն (զարնել, զոհել) բառին: Կրնանք բաղդատել զայն նաեւ պարսկական եազատա բառին հետ, որ մասնաւոր կոչում մըն է, տրուած՝ ոգիներուն կամ հրեշտակներուն, զրադաշտական կրօնին մէջ: Մեր ազատ բառն ալ, կ'ըսեն, ծագած է ասկէ: Ազատն Մասիս բացատրութեան մէջ որոշ է դիցաբանական տարրը, որով բսել կ'ուզուի դիցային կամ եազատներու յատուկ Մասիս: Մեր զատել բառին արմատն ալ նոյնն է ազատի արմատ զատին հետ: Եթէ ընդունինք, որ զատիկ բառին արմատն ալ այս զատ կամ ազատ բառն է, այն ատեն որոշ՝ կը գտնայ մեր այս բառին մէջ ազատութեան գաղափարը:

Զատիկը շարժական տօն մըն է եւ միշտ կը հանդիպի գարնան գիշերահաւասարի (Մարտ 21) լուսնի լրումին յաջորդող կիրակիին: Կրնայ պատահիլ, որ լուսնի լրումը տեղի ունենայ գիշերահաւասարէն առաջ, այն ատեն Զատիկն ալ պէտք է կատարել Ապրիլի լուսնի լրումին յաջորդող կիրակիին: Այսպէս ան 35 օրերու տարուբերում մը կ'ունենայ, Մարտ 22էն մինչեւ Ապրիլ 25: Մեր բոլոր շարժական տօներն ալ կապուած են Զատիկին:

Զատկական հանդիսութեանց մաս կը կազմէ նաեւ կարմիր հաւկիթը, ոչ միայն Հայոց, այլ եւ ուրիշ ազգերու մէջ: Այդ սովորութեան ծագումն ալ պէտք է փնտռել նախաքրիստոնէական հաւատալիքներու մէջ: Որոշ է թէ յունական, հնդկական, ճափոնական եւ այլ ժողովուրդներու աշխարհածընական վարդապետութեանց մէջ հաւկիթը նկատուած է իբրեւ կեանքին սկիզբը: Ասկէ զատ Եգիպտացիները, Հելլէնները, Հռոմայեցիները եւս զայն կը նկատէին արգասաւորութեան խորհրդանշան եւ ամէն գարնան կը նուիրէին իրենց աստուածներուն: Հրեաներն ալ Պասեքին կ'ուտէին խորոված հաւկիթ:

Կարմիր հաւկիթի գործածութիւնը, ինչպէս կ'ըսէ Հ. Հացունի, Ժ. դարէն վերջ կիլիկեան իշխանութեան շրջանին Եւրոպայէն մտաւ Հայաստան, քանի որ նախագոյն մատենագիրներու մօտ այդ մասին որ եւ է ակնարկութիւն չկայ: Յովհ. Երզնկացի (ԺԳ. դար) խորհրդանշական մեկնութիւն մըն ալ կուտայ հաւկիթին՝ իբր օրինակ «բոլոր աշխարհի», եւ կարմիր գոյնին՝ որ «նշանակէ թէ բոլոր աշխարհս Քրիստոսի արեամբ գնեցաւ»:

Զատկի առթիւ զատ մորթել եւ մատաղներ կատարել ընդհանրացած սովորութիւն մըն է Հայոց ու Յունաց մէջ:





### ԿԱԹՈՂ. ՆՈՒԻՐԱԿԻՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆՆԵՐԸ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Մարսէյլի Ազգ. Վարչութիւնը կը ծանուցանէ թէ կաթողիկոսական նուիրակ Գարեգին Արք. Յովսէփեան պիտի դասախօսէ ԷՋՄԻԱԾՆԻ ՎԵՐԱՇԻՆՈՒԹԵԱՆ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՇԻՆԱՐԱՐՈՒԹԵԱՆ մասին (ցուցադրելով նկարներ), վաղը Երկուշաբթի երեկոյ, ժամը 8.30ին, Պրէյան Մարսէյլէի սրահին մէջ: Ծախքերու համար մուտք 2 փրանք:

### ԳՈՐԾ ԿԸ ՓՆՏՌԷ

Գործ կը փնտռէ տնական աշխատանքներու մէջ փորձառու հայ կին մը, որ գիտէ պատրաստել արեւելեան եւ եւրոպական կերակուրներ եւ անուշեղէններ: Դիմել Տիկին Պէաթրիս Համամճեանի, 4, Rue de la Défense, Issy - les - Moulineaux, Seine.

### ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ԱՆԿԷՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ՏԱՐԵԿԱՆ ՀԱՆԴԷՍԻՆ

Տեղի կ'ունենայ, Կիրակի, 19 Մայիս, ժամը 3.30էն մինչեւ կէս գիշեր Անկէն, Salle des Fêtesի մէջ
Հետաքրքիր անակնկալներ — ընտիր ճաշ — աժան պիւֆէ Մուտք 10 Ֆր.:

















### FILMS RECOMMANDÉS

ՓԱԹԷ - ՆԱԹԱՆԻ ՍԻՆԷՄԱՆԵՐԸ
ՑԱՑՏԱԳԻՐ ԱՊՐԻԼ 19էն 25

VICTOR HUGO PATHE. Monsieur sans gêne —Vers l'Abyssinie
ROYAL PATHE. Monsieur sans gêne Vers l'Abyssinie
LUTETIA PATHE. Les trois lanciers du Bengale
DEMOURS PATHE. La chanson de l'adieu L'hôtel du libre échange
MOZART PATHE. Les trois lanciers du Bengale — Magazine No 5
SELECT PATHE. Les trois lanciers du Bengale — Magazine No 5
SAINT MARCEL PATHE. Les trois lanciers du Bengale —Sur scène: Marguerite Gilbert dans ses créations
LOUXOR PATHE. Les trois lanciers du Bengale —Magazine No 4
LYON PATHE. Les trois lanciers du Bengale —Magazine No 3
ROCHECHOUART PATHE. Les trois lanciers du Bengale Magazine No 3
EXCELSIOR PATHE. Les trois lanciers du Bengale —Magazine No 3
COLOMBE PATHE. Les billet de mille — Rigoletto
METROPOLE PATHE. Les trois lanciers du Bengale Magazine
CAPITOLE PATHE. Les trois lanciers du Bengale —Magazine
MONTPARNASSE PATHE. Les trois lanciers du Bengale — Magazine
BARBES PATHE. La dame aux camelias Le coup du parapluie
FEERIQUE PATHE. Le controleur des wagons lits — Au pays de Mireille
LECOURBE PATHE. Le controleur des wagons lits — Au pays de Mireille
PALAIS DES GLACES PATHE. Le controleur des wagons lits —Au pays de Mireille
RECAMIER PATHE. Le controleur des wagons lits —Au pays de Mireille
SAINT CHARLES PATHE. Le controleur des wagons lits — Au pays de Mireille
PATHE ORLEANS. Le controleur des wagons lits — Au pays de Mireille
BELLEVILLE PATHE. Ademai aviateur— Dernière heure
MAINE PATHE. Le controleur des wagons lits — Au pays de Mireille
MAGIQUE PATHE.. Le controleur des wagons lits — Au pays de Mireille
SEVRES PATHE. Symphonie inachevée
OLYMPIA DE CLICHY. Le controleur des wagons lits — Le coup de parapluie
CASINO DE CLICHY. Le saut dans l'abîme Tout mon coeur Veronika
PATHE CINEMA PALACE (Boulogne). Le voyage imprévu — Science et police
KURSAAL BOULOGNE. Nuit de Mai On demande un employé
AUBERVILLIERS KURSAAL. Cléopatre La demoiselle du téléphone
ALHAMBRA D'ASNIERES. Le billet de mille —Rigoletto
MARIVAUX PATHE. Justin de Marseille
IMPERIAL PATHE.
MAX LINDER PATHE. Jeunesse bouleversée (Vers. orig. s.t.f.)
MOULIN ROUGE PATHE. Jonny haute couture —Charles Gan à Londre
MARIGNAN PATHE - NATAN. Golgotha
EMPIRE PATHE - NATAN.
OMNIA CINE INFORMATIONS. Actualités mondiales






Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17, Rue Dameme, PARIS (13)

